Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (Բ) Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ՅԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 7 (85)

Հայկական ԽՍՀ ԺԿԽ-ին կից «ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
Հրատարակչություն, ԵՐԵՎԱՆ—1940 թ.

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

ԷՋ



ԽՍՀՄ ԱՌԱՋԻՆ ԳՈՒՄԱՐՄԱՆ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ
VI ՍԵՍՍԻԱՆ

# ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅԱՆ ԱՐՏԱՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՈՄԻՍԱՐՆԵՐԻ ԽՈՐՀՐԴԻ ՆԱԽԱԳԱՀ ՅԵՎ ԱՐՏԱՔԻՆ ԳՈՐԾԵՐԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՈՄԻՍԱՐ ԸՆԿԵՐ Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ

ԽՍՀ Միության Գերագույն խորհրդի 1940 թվի մարտի 29-ի նիստում

*Ընկեր դեպուտատնե՛ր:*

*Գերագույն Խորհրդի վերջին սեսսիայի ժամանակից անցել է հինգ ամիս: Այս փոքր ժամանակաշրջանում կատարվեցին այնպիսի իրադարձություններ, վորոնք առաջնակարգ նշանակություն ունեն միջազգային հարաբերությունների զարգացման մեջ: Այս կապակցությամբ ահրաժեշտ է*

Գերագույն Խորհրդի ներկա նստաշրջանում
քննության առնել մեր արտաքին քաղաքա-
կանությանը վերաբերող հարցերը։

Միջազգային կյանքում կատարված վեր-
ջին իրադարձությունները անհրաժեշտ է
քննարկել, ամենից առաջ, այն պատերազ-
մի լույսի տակ, որն սկսվեց Կենտրոնա-
կան Յեվրոպայում անցյալ տարվա աշնա-
նը։ Անգլո—ֆրանսիական բլոկի և Գերմա-
նիայի միջև տեղի ունեցող պատերազմում
մինչև այժմ չեն յեղել խոշոր ճակատա-
մարտեր և գործը սահմանափակվել է ա-
ռանձին ընդհարումներով, գլխավորապես
ծովի վրա, ինչպես նաև օդում։ Հայտնի
է, սակայն, որ դեռևս անցյալ տարվա
վերջին՝ Գերմանիայի արտահայտած խա-
ղաղության ձգտումը մերժվեց Անգլիայի ու
Ֆրանսիայի կառավարությունների կողմից,
որի հետևանքով յերկու կողմերից էլ ա-
վելի՛ ևս ուժեղացավ պատերազմի ծավալ-
ման նախապատրաստությունը։

Գերմանիան, որը վերջին ժամանակա-
շրջանում միավորեց մինչև 80 միլիոն
գերմանացիների, իր տիրապետության տակ
դրեց որոշ հարևան պետությունների, և
մեծապես ուժեղացավ ռազմական տեսակե-
տից, ինչպես յերևում է, վտանգավոր



մրցակից է դարձել Յեվրոպայի գլխավոր
իմպերիալիստական տերությունների— Ան-
գլիայի և Ֆրանսիայի համար։ Ուստի, Լե-
հաստանի հանդեպ իրենց պարտավորու-
թյունների կատարման պատրվակով, նր-
րանք պատերազմ հայտարարեցին Գերմա-
նիային։ Այժմ հատկապես պարզ յերևում
է, թե այդ տերությունների կառավարու-
թյունների իսկական նպատակները որ-
քա՛ն հեռու յեն քայքայված Լեհաստանի
կամ Չեխո—Սլովակիայի պաշտպանության
շահերից։ Դա յերևում է արդեն այն բա-
նից, որ Անգլիայի և Ֆրանսիայի կառա-
վարությունները այդ պատերազմի մեջ
իբրև իրենց նպատակ հռչակեցին Գերմա-
նիայի ջախջախումն ու մասնատումը, թեև
այդ նպատակները ժողովրդական մասսա-
ներից դեռևս թաքցվում են «դեմոկրատա-
կան» յերկրների և փոքր ժողովուրդների
«իրավունքների» պաշտպանության լոզունգ-
ներով։

Այնքան որքան Խորհրդային Միությու-
նը չուզեց դառնալ Անգլիայի ու Ֆրանսիա-
յի աջակիցը Գերմանիայի դեմ ուղղված
այդ իմպերիալիստական քաղաքականու-
թյան կիրառման գործում, նրանց թշնա-
մական դիրքը Խորհրդային Միության վե-

բաբերմամբ ե՛լ ավելի ուժեղացավ, ակնա-
ռու կերպով վկայելով, թե վորքա՛ն խորն
են սոցիալիստական պետության դեմ իմ-
պերիալիստների թշնամական քաղաքակա-
նության դասակարգային արմատները: Իսկ
Ֆինլանդիայում սկսված պատերազմն ան-
գլո-ֆրանսիական իմպերիալիստները պատ-
րաստ եյին յելակետ դարձնել ԽՍՀՄ-ի
դեմ պատերազմելու համար, այդ նպատա-
կով ոգտագործելով վոչ միայն բուն Ֆին-
լանդիային այլև սկանդինավյան յերկրնե-
րը— Շվեդիան ու Նորվեգիան:

Խորհրդային Միության վերաբերմունքը
Յեվրոպայում ծավալվող պատերազմի նը-
կատմամբ՝ հայտնի յե: Խաղաղասիրու-
թյամբ տոգորված Խորհրդային Միության
արտաքին քաղաքականությունն այստեղ ևս
ցուցաբերվեց լիակատար վորոշակիությամբ:
Խորհրդային Միությունը միանգամից հենց
հայտարարեց, վոր ինքը կանգնած է չե-
զոքության դիրքերի վրա և անշեղորեն կի-
րառում եր այդ քաղաքականությունն ան-
ցած ամբողջ ժամանակաշրջանում:

Խորհրդային Միության և Գերմանիայի
փոխհարաբերությունների մեջ դեպի լավը
կատարված կտրուկ շրջադարձն իր արտա-
հայտությունը գտավ չհարձակվելու պայ-



մանագրի մեջ, վորն ստորագրվեց անցյալ
տարվա ոգոստոսին: Խորհրդային-գերմա-
նական այս նոր, լավ հարաբերություննե-
րը փորձով ստուգվեցին նախկին Լեհաս-
տանում տեղի ունեցած իրադարձություն-
ների կապակցությամբ և բավականաչափ
ցույց տվին իրենց հաստատուն լինելը:
Տնտեսական հարաբերությունների դեռ
այն ժամանակ, անցյալ տարվա աշնանը,
նախատեսված զարգացումն իր կոնկրետ
արտահայտությունը գտավ դեռևս ոգոս-
տոսյան (1939 թվի), իսկ այնուհետև՝
փետրվարյան (1940 թվի) առևտրական
համաձայնությունների մեջ: Ապրանքաշըր-
ջանառությունը Գերմանիայի ու ԽՍՀՄ-ի
միջև սկսեց աճել փոխադարձ տնտեսական
ոգտակարության հիման վրա, և հիմքեր
կան նրա հետագա զարգացման համար:

Մեր հարաբերություններն Անգլիայի ու
Ֆրանսիայի հետ դասավորվեցին մի փոքր
այլ կերպ: Այնքան վորքան Խորհրդային
Միությունը չցանկացավ դառնալ անգլո-
ֆրանսիական իմպերիալիստների զենքը հա-
մաշխարհային հեգեմոնիայի համար ընդ-
դեմ Գերմանիայի նրանց պայքարում,
մենք ամեն մի քայլափոխում ստիպված ե-
յինք լինում հանդիպելու նրանց քաղաքա-

կանության խոր թշնամությանը մեր երկ-
րի վերաբերմամբ: Բանն ամենից հեռու
գնաց ֆինլանդական հարցում, որի վրա
ես կանգ կառնեմ քիչ հետո: Բայց վեր-
ջին ամիսների ընթացքում եղել են ԽՍՀՄ-
ի վերաբերմամբ ֆրանսիական ու անգլի-
ական քաղաքականության թշնամանքի մի-
քիչ թվով նաև այլ փաստեր:

Բավական է մատնանշել, որ ֆրանսիա-
կան իշխանությունները չգտան որևէ ա-
վելի լավ բան, քան թե երկու ամիս
սրանից առաջ Փարիզի մեր առևտրական
ներկայացուցչության վրա ոստիկանական
հարձակում գործելը: Առևտրական ներկա-
յացուցչությունում կատարված խուզար-
կությունը, չնայած բոլոր բծախնդ-
րություններին, չտվեց որևէ արդյունք:
Այն միայն խայտառակեց այդ այլանդակ
գործի նախաձեռնողներին և ցույց տվեց,
որ մեր երկրի վերաբերմամբ թշնամա-
կան այդ ակտի համար չկար որևէ ռեալ
առիթ: Ինչպես մենք տեսնում ենք Ֆրան-
սիայում մեր լիազոր-ներկայացուցիչ ընկ.
Սուրիցին հետ կանչելու գործի հետ կապ-
ված հանգամանքներից, ֆրանսիական կա-
ռավարությունն արհեստական շարժառիթ-
ներ է փնտրում Խորհրդային Միության



վերաբերմամբ իր անբարյացակամությունն
ընդգծելու համար: Վորպեսզի պարզ լի-
ներ, որ Խորհրդային Միությունը ո՛չ
ավելի չափով է շահագրգռված երկու
երկրների փոխհարաբերություններով,
քան թե Ֆրանսիան, մենք ընկ. Սուրիցին
հետ կանչեցինք Ֆրանսիայում լիազոր-ներ-
կայացուցչի պոստից:

Կամ թե վերցրեք ԽՍՀՄ-ի վերաբերմամբ
թշնամական ակտերի այնպիսի օրինակներ,
ինչպես Հեռավոր Արևելքում անգլիական
ռազմանավերի կողմից մեր երկու շոգե-
նավերի գրավումը, որոնք Վլադիվոստոկ
էյին գալիս Ամերիկայում և Չինաստանում
մեր կողմից գնած ապրանքներով: Ցեթե
դրան ավելացնենք այնպիսի փաստեր, ինչ-
պես՝ արդյունաբերական սարքավորման
մեր հին պատվերների կատարումից հրա-
ժարվելն Անգլիայում, առևտրական ներ-
կայացուցչության դրամական գումարների
վրա կալանք դնելը Ֆրանսիայում և շատ
այլ փաստեր, ապա Խորհրդային Միու-
թյան վերաբերմամբ անգլիական ու ֆրան-
սիական իշխանությունների գործողու-
թյունների թշնամականությունը կերևա
է՛լ ավելի մեծ չափով:

Փորձեր են եղել մեր արտաքին առև-

տրի վերաբերմամբ այդ թշնամական ակտերն արդարացնել նրանով, թե Գերմանիայի հետ ունեցած մեր առևտրով մենք վերջինիս օգնում ենք Անգլիայի և Ֆրանսիայի դեմ մղվող պատերազմում: Դժվար չէ համոզվել, որ այդ փաստարկումները դատարկ գրոշի արժեք չունեն: Դրա համար հարկավոր է ԽՍՀՄ-ը համեմատել թեկուզ Ռումինիայի հետ: Հայտնի յե, որ Ռումինիայի ամբողջ արտաքին ապրանքաշրջանառության կես մասը կազմում է առևտուրը Գերմանիայի հետ, ընդ որում Ռումինիայի ազգային արտադրանքի բաժինը Գերմանիա կատարվող էքսպորտի մեջ, օրինակ, այնպիսի հիմնական ապրանքների գծով, ինչպես՝ նավթամթերքներն ու հացահատիկը, մեծապես գերազանցում է ԽՍՀՄ ազգային արտադրանքի բաժինը Գերմանիա կատարվող մեր էքսպորտի մեջ: Այնուամենայնիվ, Ռումինիայի վերաբերմամբ Անգլիայի ու Ֆրանսիայի կառավարությունները չեն դիմում թշնամական ակտերի և հնարավոր չեն համարում պահանջել, որ Ռումինիան դադարեցնի իր առևտուրը Գերմանիայի հետ: Միանգամայն այլ վերաբերմունք գոյություն ունի դեպի Խորհրդային Միությունը:



Հետևապես, Խորհրդային Միության վերաբերմամբ Անգլիայի ու Ֆրանսիայի թշնամական ակտերը բացատրվում են ոչ թե Գերմանիայի հետ ԽՍՀՄ-ի առևտրով, այլ նրանով, որ վիժեցին անգլո-ֆրանսիական կառավարող շրջանների հաշիվները՝ մեր յերկիրն օգտագործելու Գերմանիայի դեմ մղվող պատերազմում, և նրանք, այդ բանը նկատի ունենալով, վրեժխնդրության քաղաքականություն են վարում Խորհրդային Միության վերաբերմամբ:

Անհրաժեշտ է ավելացնել, որ այս բոլոր թշնամական գործողություններն Անգլիայի և Ֆրանսիայի կողմից կատարվում եյին չնայած այն բանին, որ Խորհրդային Միությունը մինչև այժմ վորևէ անբարյացակամ գործողություն չի ձեռնարկել այդ յերկրների վերաբերմամբ: Իսկ Խորհրդային Միությանը վերագրվող ֆանտաստիկ պլանները՝ Կարմիր բանակի ինչ-որ արշավների մասին «դեպի Հնդկաստան», «դեպի Արևելք» և այլն— այնպիսի ակնհայտ վայրենություն են, որ նման անհեթեթ վայրահաչության կարող են հավատալ միայն խելքները բոլորովին թռցրած մարդիկ: (Ծիծաղ): Բանն ի հարկե այդ չէ: Բանն ակներևորեն այն է, որ

Խորհրդային Միության կողմից վիրավորող չեզոքության քաղաքականությունը դյուր չեկավ անգլո-ֆրանսիական կառավարող շրջանների քիմքին: Մանավանդ, վոր նրանց նյարդերն ըստ յերևույթին բոլորովի՛ն էլ կանոնավոր վիճակում չեն: (Ծիծաղ): Նրանք ուզում են մեր վզին փաթաթել այլ քաղաքականություն — Գերմանիայի դեմ թշնամության ու պատերազմի քաղաքականություն, քաղաքականություն, վորը նրանց հնարավորություն տար ԽՍՀՄ-ն օգտագործել իմպերիալիստական նպատակներով: Կարծես թե ժամանակն է, վորպեսզի այդ պարոնայք հասկանան, վոր Խորհրդային Միությունն ուրիշի քաղաքականության զենք չի՛ յեղել ու յերբե՛ք էլ չի լինի, վոր ԽՍՀՄ-ը միշտ վարե՛լ է ու կվարի՛ իր սեփական քաղաքականությունը, առանց հաշվի առնելու՝ այդ դյուր է գալիս մյուս յերկրների պարոններին, թե՞ դյուր չի գալիս: (Բուռն, յերկարատև ծափահարություններ):

Անցնում եմ ֆինլանդական հարցին:

Ինչո՞ւմն էր վերջին՝ յերեքից ավելի ամիսների ընթացքում Ֆինլանդիայում ծավալված պատերազմի իմաստը: Դուք գիտեք, վոր այդ իրադարձությունների ի-



մաստն էր՝ Խորհրդային Միության հյուսիս-արևմտյան սահմանների անվտանգության ապահովումը և, ամենից առաջ, Լենինգրադի անվտանգության ապահովումը:

Անցյալ տարվա հոկտեմբեր և նոյեմբեր ամիսների ընթացքում Խորհրդային կառավարությունը բանակցություններ էր վարում ֆինլանդական կառավարության հետ այնպիսի առաջարկների մասին, վորոնց իրականացումը ներկայիս, ավելի ու ավելի չիկացող միջազգային իրադրության մեջ, մենք համարում եյինք միանգամայն անհրաժեշտ ու անհետաձգելի՝ յերկրի անվտանգությունն ապահովելու համար և, հատկապես, Լենինգրադի անվտանգության համար: Այդ բանակցություններից վոչինչ դուրս չեկավ, վորովհետև ֆինլանդական ներկայացուցիչները բռնեցին անբարյացակամ դիրք: Հարցի լուծումն անցավ պատերազմի դաշտը: Կարելի յե համոզված վերպով ասել, վոր յեթե Ֆինլանդիայի վերաբերմամբ չլինեյին արտաքին ազդեցություններ, յեթե վորոշ յերրորդ պետություններ Ֆինլանդիային ավելի քիչ չափով հրահրեյին թշնամական քաղաքականություն վարել Խորհրդային Միության նկատմամբ, ապա Խորհրդային Միությունն ու Ֆինլան-

դիան արդեն անցյալ տարվա աշնանը հաշտ կերպով համաձայնության կգային միմյանց հետ և գործը կընթանար առանց պատերազմի: Բայց չնայած, որ Խորհրդային կառավարությունն իր ցանկությունները հասցրեց մինիմումի, գործը չհաջողվեց վերջացնել դիվանագիտական ճանապարհով:

Այժմ, երբ ռազմական գործողությունները Ֆինլանդիայում վերջացել են և հաշտության պայմանագիր է ստորագրվել ԽՍՀՄ-ի ու Ֆինլանդական Հանրապետության միջև, պե՛տք է և կարելի՛ է Ֆինլանդիայում տեղի ունեցած պատերազմի նշանակության մասին դատել անհերքելի փաստերի հիման վրա: Իսկ այդ փաստերը խոսում են իրենք իրենց մասին: Այդ փաստերն ասում են, որ Լենինգրադից ոչ հեռու, ամբողջ Կարելական պարանոցում, խորանալով 50—60 կիլոմետր, Ֆինլանդական իշխանությունները կառուցել էին բազմաթիվ և հզոր երկաթ-բետոնյա և գրանիտ-հողային ռազմական ամրություններ՝ հրետանիով ու գնդացիրներով: Այդ ամրությունների թիվը հասնում է շատ հարյուրների: Այդ ռազմական ամրությունները, մանավանդ երկաթ-բետոնյա կառու-



ցումները, որոնք հասել էին զգալի ռազմական ուժի, ունեյին ստորերկրյա միացումներ, շրջապատված էին հատուկ հակատանկային հորերով ու գրանիտե ցցաքարերով և պաշտպանված էին բազմաթիվ ականային դաշտերով, ամբողջությամբ վերցված, կազմում էին այսպես կոչված՝ «Մաններհայմի գիծը», որը կառուցվել էր համապատասխան ստորերկրյա մասնագետների ղեկավարությամբ, «Մաժինոյի գծի» և «Զիգֆրիդի գծի» տիպով: Պետք է նշել, որ այդ ամրությունները մինչև մեր օրերը համարվում էին անառիկ, այսինքն այնպիսի ամրություններ, որոնք մինչև այժմ ոչ մի բանակի կողմից խորտակված չեն եղել: Պետք է նաև նշել, որ յուրաքանչյուր գյուղակ այդ շրջաններում Ֆիննական զինվորական իշխանությունները նախորոք աշխատել էին վերածել ամրացված կետի, որն ուներ զենք, ռադիո-անտեննաներ, վառելիքի ամբարներ և այլն: Հարավային և արևելյան Ֆինլանդիայում շատ տեղերում ընդհուպ դեպի մեր սահմանն անցկացված էին ստրատեգիական երկաթուղիներ ու խճուղիներ, որոնք չունեյին տնտեսական որևէ նշանակություն:

Կարճ ասած, Ֆինլանդիայում տեղի ու-

նեցած պատերազմական գործողությունները ցույց տվին, վոր Ֆինլանդիան և, ամենից առաջ, Կարելական պարանոցն արդեն 1939 թվին վերածվել եր յերրորդ տերությունների մի պատրաստ ռազմական պլացդարմի՝ Խորհրդային Միության վրա հարձակվելու համար, Լենինգրադի վրա հարձակվելու համար:

Անվիճելի փաստերը ցույց տվին, վոր ֆինլանդական քաղաքականության թշնամությունը, վորին մենք հանդիպեցինք անցյալ տարվա աշնանը, պատահական չեր: Խորհրդային Միության թշնամի ուժերը մեր յերկրի դեմ և, ամենից առաջ, Լենինգրադի դեմ Ֆինլանդիայում պատրաստել եյին այնպիսի ռազմական պլացդարմ, վորը վորոշ, ԽՍՀՄ-ի համար անբարենպաստ արտաքին պարագաներում պետք է իր դերը խաղար իմպերիալիստների հակախորհրդային ուժերի և Ֆինլանդիայում նրանց դաշնակիցների պլանների մեջ:

Կարմիր բանակը վո՛չ միայն կործանեց «Մաններհայմի գիծը» և դրանով իսկ փառքով ոծեց իրեն վորպես առաջին բանակը, վորն ամենադժվարին պայմաններում ուղի հարթեց միանգամայն ժամանակակից ռազմական ամրությունների հզոր մեծ շերտի



միջով,— Կարմիր բանակը՝ Կարմիր նավատորմի հետ միասին՝ վո՛չ միայն կործանեց ֆինլանդական ռազմական պլացդարմը, վորը պատրաստվել եր Լենինգրադի վրա հարձակվելու համար, այլև լիկվիդացիայի յենթարկեց հակախորհրդային վորոշ պլաններ, վորոնք վերջին տարիների ընթացքում փայփայվում եյին վորոշ յերրորդ տերությունների կողմից: (Յերկարատև ծափահարություններ):

Թե վորքան հեռու յեր գնացել թշնամանքը մեր յերկրի նկատմամբ Ֆինլանդիայի կառավարող ու ռազմական շրջանների մեջ, վորոնք ռազմական պլացդարմ եյին պատրաստում ԽՍՀ Միության դեմ, նաև յերևում է վիրավոր ու գերի ընկած կարմիրբանակայինների վերաբերմամբ սպիտակֆինների բացառիկ բարբարոսության ու գազանության բազմաթիվ փաստերից: Այսպես օրինակ, յերբ Լադոգայի լճից հյուսիս ընկած շրջաններից մեկում ֆինները շրջապատեցին մեր սանիտարական վրանները, վորտեղ գտնվում եյին 120 ծանր վիրավորներ, նրանք բոլորը վոչնչացվեցին սպիտակֆինների կողմից. Նրանց մի մասին սպիտակֆիններն այրել եյին, մի մասը գտնըվեց ջախջախված գլուխներով, մյուսները

խոցված էին կամ գնդակահարված, չնա-
յած մահացու վերքերի առկայությանը.
այդտեղ, ինչպես և այլ տեղերում զոհված-
ների զգալի մասն ուներ գլխին արձակված
կրակոցների ու հրացանի կոթով ջախջախ-
ման հետքեր, իսկ հրաշենով սպանվածների
մի մասն ուներ ֆիննական դանակներով
դեմքին հասցված վերքեր: Վորոշ դիակներ
գտնվեցին կտրված գլուխներով, և գլուխ-
ներն այնպես էլ չհայտաբերվեցին: Սպի-
տակֆինների ձեռքն ընկած կին–սանիտա-
րուհիների վերաբերմամբ կիրառվում էին
հատուկ ծաղր ու ծանակ և անասելի զա-
զանություններ: Վորոշ դեպքերում սպան-
վածների դիակները գլխիվայր դիմհար ե-
յին արվում ծառերին: Այս ամբողջ բար-
բարոսությունն ու անհամար դաժանու-
թյունները— ֆինլանդական սպիտակգվար-
դիականության քաղաքականության պտուղ-
ներն էին, վոր ձգտում էր իր ժողովրդի
մեջ ատելություն բորբոքել դեպի մեր
յերկիրը:

Այս է «արևմտյան քաղաքակրթության»
ֆիննական պաշտպանների դեմքը:

Դժվար չէ տեսնել, վոր պատերազմը
Ֆինլանդիայում հենց սոսկ մի ընդհարում
չէր ֆիննական զորքերի հետ: Վո՛չ, այս-



տեղ բանն ավելի բարդ էր: Այստեղ տեղի
ունեցավ մեր զորքերի ընդհարում վո՛չ թե
պարզապես ֆիննական զորքերի հետ, այլ
մի շարք յերկրների իմպերիալիստների
միացյալ ուժերի հետ, ներառյալ անգլիա-
կան, ֆրանսիական ու այլ իմպերիալիստ-
ների, վորոնք ֆինլանդական բուրժուա-
զիային օգնում էին զենքի բոլոր տեսակ-
ներով և հատկապես հրետանիով ու ինքնա-
թիռներով, ինչպես նաև իրենց մարդկան-
ցով՝ «կամավորների» անվան տակ, իրենց
վոսկով ու ամեն տեսակ մատակարարու-
մով, ամբողջ աշխարհում իրենց կատաղի
ագիտացիայով՝ Խորհրդային Միության
դեմ ամեն կերպ պատերազմ հրահրելու
համար: Սրան պետք է ավելացնել, վոր
Խորհրդային Միության թշնամիների ցա-
կոտ վոռնոցի մեջ ամբողջ ժամանակ ականջ
էն ծակել II Ինտերնացիոնալի այդ բոլոր
պոռնկացած «սոցիալիստների» ճչան ձայ-
ները (դահլիճում ուրախ աշխուժություն),
—այդ բոլոր էտլիների և բլյումների,
սիտրինների և ժուոների, տրանմելյների
և խեգլունդների—կապիտալի այդ լակեյ-
ների, վորոնք մինչև վերջը իրենց վաճառել
էն պատերազմի հրձիգներին:

Անգլիական վարչապետ Չեմբեռլենը մար-

տի 19-ին հանդես գալով համայնքների պալատում, վոչ միայն չոր ափսոսանք արտահայտեց այն կապակցությամբ, վոր չհաջողվեց խանգարել պատերազմի ավարտմանը Ֆինլանդիայում, դրանով իսկ ամբողջ աշխարհի առջև թարս շուռ տալով իր «խաղաղասեր» իմպերիալիստական հոգին (ծիծաղ), այլև տվեց հաշվետվության նմանող ինչ վոր մի բան այն մասին, թե անգլիական իմպերիալիստները կոնկրետ ինչպես և ինչով եյին ձգտում ոգնել պատերազմի հրահրմանը Ֆինլանդիայում՝ ընդդեմ Խորհրդային Միության։ Չեմբեռլենը հրապարակեց այն ռազմանյութերի ցանկը, վոր խոստացվել և ուղարկվել եյին Ֆինլանդիային. խոստացվել եր 152 ինքնաթիռ, ուղարկված է 101 ինքնաթիռ, խոստացվել եր 223 հրանոթ, ուղարկված է 114-ը. խոստացվել եր 297 հազար արկ, ուղարկված է 185 հազար. Վիկկերս թնդանոթներ խոստացվել եր 100 հատ, ուղարկված է 100 հատ. խոստացվել եր 20.700 ավիացիոն ռումբ, ուղարկված է յեղել 15.700 հատ. խոստացվել եր 20 հազար հակատանկային ական, ուղարկվել է 10 հազար հատ և այլն։ Առանց ամաչելու Չեմբեռլենը պատմում եր նաև այն մասին, վոր «եքս-



պեդիցիոն զորամասերի նախապատրաստումն ուղարկելու համար, կատարվել եր առավելագույն արագությամբ, և եքսպեդիցիոն բանակը թվով 100 հազար մարդ, ուղարկելու համար պատրաստ եր մարտի սկզբներին—յերկու ամիս շուտ այն ժամկետից, վոր Մաններհայմը նշանակել եր նրանց՝ Ֆինլանդիա գալու համար։ Այդ զորքերը չպետք է լինեյին վերջինը»։

Ահա թե իրականում ինչ դեմք ունի «խաղաղասեր» անգլիական իմպերիալիզմը, իր իսկ սեփական խոստովանություններով։

Ինչ վերաբերվում է Ֆրանսիային, ապա ֆրանսիական մամուլի հաղորդագրություններով այնտեղից Ֆինլանդիա եյին ուղարկվել՝ 179 ինքնաթիռ, 472 հրանոթ, 795 հազար արկ, 5.100 գնդացիր, 200 հազար ձեռքի նռնակ և այլն։ Մարտի 11-ին, այն ժամանակվա ֆրանսիական վարչապետ Դալադյեն հայտարարեց դեպուտատների պալատում, վոր «Ֆրանսիան գլխավորում է այն յերկրներին, վորոնք համաձայնվել են ռազմանյութեր մատակարարել Ֆինլանդիային և, մասնավորապես Ֆրանսիան, Հելսինկիի խնդրանքով, հենց նոր Ֆինլանդիա յե ուղարկել ուլտրաժամանակակից ռմբակոծիչներ»։ Դալադյեն հայտարարել

էր, որ «փետրվարի 26-ից ֆրանսիական զորքերի էքսպեդիցիոն կորպուսը հանդերձավորված ու պատրաստված է։ Զգալի թվով նավեր պատրաստ են ուղևորվելու Լամանշի և Ատլանտյան ափերի յերկու խոշոր նավահանգիստներից»։ Դալադյեն նաև հայտարարում էր, որ դաշնակիցները «օգնություն կտան Ֆինլանդիային՝ խոստացված բոլոր ուժերով»։

Դալադյեյի՝ Խորհրդային Միության վերաբերմամբ թշնամական այս հայտարարությունները խոսում են իրենք իրենց մասին։ Սակայն կարիք չկա կանգ առնելու այդ թշնամական հայտարարությունների վրա, քանի որ դրանց մեջ, բաց յերևույթին, արդեն չկա մտքերի լիակատար լուրջ ընթացք։ (Դահլիճում ուրախ աշխուժություն)։

Պետք է նաև հիշատակել ֆինլանդական պատերազմի մեջ Շվեդիայի մասնակցության մասին։ Շվեդական բոլոր թերթերում հրապարակված հաղորդագրություններով, Շվեդիան Խորհրդային Միության դեմ մղված պատերազմի ժամանակ Ֆինլանդիայի տրամադրության տակ դրել էր «փոքր քանակությամբ ինքնաթիռներ, որոնք կազմում էին շվեդական այն ժամա-



նակվա բոլոր ռազմա-օդային ուժերի մոտավորապես մեկ հինգերորդ մասը»։ Շվեդական զինվորական մինիստրի հայտարարությամբ, ֆինները Շվեդիայից ստացել էին 84 հազար հրացան, 575 գնդացիր, ավելի քան 300 հրետանային հրանոթ, 300 հազար նռնակ, 50 միլիոն փամփուշտ։ Այդ ամբողջ ռազմանյութը, մինիստրի հայտարարությամբ, յեղել է ամենանորագույն տիպի։

Ֆինլանդիայում պատերազմը բորբոքելու գործում հետ չմնաց նաև Իտալիան։ Նա, օրինակ, Ֆինլանդիա յեր ուղարկել 50 ռազմական ինքնաթիռ։

Ֆինլանդիային ռազմական օգնություն էր գալիս նաև «խաղաղությանն» այնքա՜ն նվիրված՝ Ամերիկայի Միացյալ Նահանգներից։ (Ընդհանուր ծիծաղ)։

Միայն պատերազմի ընթացքում այլ յերկրներից Ֆինլանդիա ուղարկված ամենատեսակի սպառազինման ընդհանուր քանակը, ոչ լրիվ տեղեկություններով, հասավ՝ ինքնաթիռներ— առնվազն 350 հատ, հրետանային հրանոթներ— մոտ 1.500, ավելի քան 6.000 գնդացիր, մոտ 100 հազար հրացան, 650 հազար ձեռքի նռնակ,

2·500·000 արկ, 160 միլիոն փամփուշտ և դարձյալ շատ ուրիշ բաներ:

Հարկ չկա բերելու այլ փաստեր, վորոնք հաստատում են, վոր Ֆինլանդիայում խոսքը վերաբերում եր վոչ թե պարզապես մեր ընդհարմանը՝ ֆիննական զորքերի հետ, այլ վոր դա մի ընդհարում եր Խորհրդային Միության նկատմամբ առավել թշնամական մի շարք իմպերիալիստական յերկրների միացյալ ուժերի հետ: Ջախջախելով թշնամիների այդ միացյալ ուժերը, Կարմիր բանակը և Կարմիր նավատորմը մի նոր պանծալի եջ գրեցին իրենց պատմության մեջ և ցույց տվին, վոր մեր ժողովրդի մեջ խիզախության, անձնվիրության ու հերոսության աղբյուրն անսպառ է: (Բուռն ծափահարություններ):

Ֆինլանդիայում տեղի ունեցած պատերազմը ինչպես մեզանից, այնպես և ֆիններից պահանջեց մեծ զոհեր: Մեր գլխավոր շտաբի հաշիվներով մեր կողմից սպանվածների և վերքերից մահացածների թիվը կազմում է 48·745 մարդ, այսինքն՝ 49 հազար մարդուց մի քիչ պակաս, վիրավորների թիվը— 158·863 մարդ: Ֆիննական կողմը փորձում է նվազեցնել իր կրած զոհերը, բայց ֆինների զոհերն զգա-



լիորեն ավելի յեն մերինից: Մեր գլխավոր շտաբի նվազագույն հաշիվներով, ֆինների մոտ սպանվածների թիվը հասնում է առնվազն 60 հազարի, չհաշված վերքերից մեռածները, իսկ վիրավորների թիվը կազմում է առնվազն 250 հազար մարդ: Այսպիսով, յելնելով այն բանից, վոր ֆիննական բանակի թիվը կազմում եր առնվազն 600 հազար մարդ, պետք է ընդունել, վոր ֆիննական բանակն սպանվածներով ու վիրավորներով կորցրեց իր կազմի ավելի քան կես մասը:

Սրանք են փաստերը:

Հարց է մնում, թե ինչո՞ւ այնուամենայնիվ Անգլիայի ու Ֆրանսիայի, ինչպես նաև մի քանի այլ յերկրների կառավարող շրջաններն այդպես ակտիվ կերպով մասնակցում եյին այդ պատերազմին՝ Ֆինլանդիայի կողմում, ընդդեմ Խորհրդային Միության: Հայտնի յե, վոր Անգլիայի և Ֆրանսիայի կառավարությունները հուսահատ ջանքեր եյին գործադրում, վորպեսզի խանգարեյին պատերազմի ավարտմանն ու խաղաղության վերականգնմանը Ֆինլանդիայում, թեև նրանք կապված չեն Ֆինլանդիայի վերաբերմամբ վոչ մի տեսակի պարտավորություններով: Հայտնի յե

նաև, վոր ժամանակին, Ֆրանսիայի ու Չեխո-Սլովակիայի միջև փոխադարձ ոգնության պակտի առկայության դեպքում նույնիսկ, Ֆրանսիան ոգնության չեկավ Չեխո-Սլովակիային։ Իսկ Ֆինլանդիայի վզին ուղղակի փաթաթում եյին իրենց ռազմական ոգնությունն ինչպես Ֆրանսիան, այնպես էլ Անգլիան, միայն թե խանգարեյին պատերազմի ավարտմանը և հաշտության վերականգնմանը Ֆինլանդիայի ու Խորհրդային Միության միջև։ Լրագրային խարդախության ու խաբեբայության մեջ մասնագիտացած ամեն տեսակ գրչակների թվին պատկանող գրչի վարձկան ավազակները փորձում են անգլո-ֆրանսիական շրջանների նման վարմունքը բացատրել «փոքր ժողովուրդների» մասին հատուկ հոգատարությամբ։ Բայց Անգլիայի և Ֆրանսիայի այդ քաղաքականությունը փոքր պետության շահերի մասին հատուկ հոգացողությամբ բացատրելը ուղղակի ծիծաղելի յե։ Բացատրել այդ՝ Ազգերի լիգայի հանդեպ ունեցած պարտավորություններով, վորն իբր թե պահանջում եր պաշտպանել նրա անդամին,— նույնպես բոլորովին սրամիտ չե։ Իսկապես, դեռ մի տարի էլ չի անցել, ինչ



Իտալիան գրավեց ու վոչնչացրեց անկախ Ալբանիան, վորն Ազգերի լիգայի անդամ եր։ Յեվ ի՞նչ։ Անգլիան ու Ֆրանսիան հանդես յեկա՞ն արդյոք Ալբանիայի պաշտպանությամբ, նրանք թեկուզ մի թույլ ձայն բարձրացրի՞ն արդյոք Իտալիայի գրավողական գործողությունների դեմ, վորը բռնի կերպով իրեն յենթարկեց Ալբանիային, հաշվի չառնելով նրա բնակչությունը, վոր կազմում ե ավելի քան մեկ միլիոն մարդ, և ուշադրություն չդարձնելով այն բանի վրա, վոր Ալբանիան Ազգերի լիգայի անդամ եր։ Վո՛չ։ Վո՛չ անգլիական, վո՛չ էլ ֆրանսիական կառավարությունը, վո՛չ Ամերիկայի Միացյալ Նահանգները, վո՛չ Ազգերի լիգան, վորը կորցրել ե ամեն մի հեղինակություն՝ այնտեղ նույն այդ անգլո-ֆրանսիական իմպերիալիստների տնորինության հետևանքով,— նույնիսկ մատ-մատին չխփեցին այդ առթիվ։ Փոքր ժողովուրդների այդ «պաշտպանները», Ազգերի լիգայի անդամների իրավունքների այդ «պաշտպաններն» ամբողջ 12 ամսվա ընթացքում այնպես էլ սիրտ չարին Ազգերի լիգայի քննարկմանը դնել Իտալիայի կողմից Ալբանիայի գրավման հարցը, վոր կատարվեց դեռ անցյալ

տարվա ապրիլին: Դեռ ավելին, նրանք փաստորեն սանկցիա տվին այդ գավթմանը: Հետևապես, ամենևին էլ փոքր ժողովուրդների պաշտպանությամբ և Ազգերի լիգայի անդամների իրավունքների պաշտպանությամբ չի՛ բացատրվում անգլիական ու ֆրանսիական կառավարող շրջանների կողմից Ֆինլանդիային աջակցություն ցույց տալը՝ ընդդեմ Խորհրդային Միության: Այդ աջակցությունը բացատրվում է նրանով, որ Ֆինլանդիայում նրանք ունեյին պատրաստի ռազմական պլացդարմ ԽՍՀՄ-ի վրա հարձակվելու դեպքում, իսկ Ալբանիան այդպիսի տեղ չէր գրավում նրանց պլանների մեջ: Իրականում, փոքր ժողովուրդների իրավունքներն ու շահերը մանր դրամ են իմպերիալիստների ձեռքում:

Անգլիական իմպերիալիստների ղեկավար թերթ «Թայմս»-ը, ինչպես նաև ֆրանսիական իմպերիալիստների ղեկավար թերթ «Թան»-ը, էլ չենք խոսում անգլիական ու ֆրանսիական բուրժուական մյուս թերթերի մասին, վերջին ամիսներս բացե ի բաց ինտերվենցիայի էին կոչում ընդդեմ Խորհրդային Միության, ամենևին հաշվի չառնելով որ մեկ կողմից՝ Անգլիայի ու



Ֆրանսիայի, և մյուս կողմից՝ Խորհրդային Միության միջև գոյություն ունեն այսպես կոչված՝ նորմալ դիվանագիտական հարաբերություններ: Բուրժուական այդ ղեկավար թերթերի տոնով, և նույնիսկ նրանցից առաջ վազելով, ճառերով հանդես են գալիս այն լակեյանոցների մարդիկ, որ ստեղծված են այժմ յուրաքանչյուր «կանոնավոր» բուրժուական պետության մեջ Ետտլիի տիպի «սոցիալիստների» համար՝ Անգլիայում, Բլյումի տիպի՝ Ֆրանսիայում, որոնք այնքա՜ն ջանքեր են գործադրում պատերազմի բորբոքման ու հետագա ընդարձակման համար: Անգլո-ֆրանսիական իմպերիալիստական մամուլի և նրա այդ «սոցիալիստական» ձայնակիցների ելույթների մեջ լսվում է սոցիալիստական պետությունն ատող նույն այն գազազած իմպերիալիզմի ձայնը, որ մեզ հայտնի յե Խորհրդային Միության գոյության առաջին օրերից: Դեռ 1919 թվի ապրիլի 17-ին անգլիական «Թայմս» թերթը գրում էր.

«Եթե մենք նայենք քարտեզին, ապա կգտնենք, որ դեպի Պետրոգրադ տանող լավագույն մատույցը Բալթիկան է և որ դեպի այն տանող ամե-

նակարճ ու ամենից ավելի հեշտ ուղին ընկած է Ֆինլանդիայի վրայով, որի սահմաններն անցնում է Ռուսաստանի մայրաքաղաքից ընդամենը մի ինչ-որ 30 մղոն հեռու: Ֆինլանդիան—Պետրոգրադի բանալին է, իսկ Պետրոգրադը—Մոսկվայի բանալին է»:

Եթե հարկավոր էին որևէ ապացույցներ, որ անգլիական ու ֆրանսիական իմպերիալիստները մինչև այժմ էլ չեն հրաժարվել այդպիսի խելագար պլաններից, ապա Ֆինլանդիայում տեղի ունեցած վերջին իրադարձություններից հետո ամեն տեսակի անորոշությունները այդ տեսակետից վերացած են: Համապատասխան պլանները նորից վիժեցին վո՛չ այն պատճառով, որ պակասում էին հակախորհրդային ուժերի ջանքերն Անգլիայում ու Ֆրանսիայում, և վո՛չ պարզապես այն պատճառով, որ վերջին մոմենտին Ֆինլանդիայի, ինչպես նաև Շվեդիայի ու Նորվեգիայի ղեկավար շրջանները, վերջապես, ցուցաբերեցին վորոշ խելացիություն: Այդ պլանները վիժեցին Կարմիր բանակի փայլուն հաջողությունների շնորհիվ, հատկապես Կարելական պարանոցում: (Ծափահարություններ): Բայց մենք չենք մոռանա,



որ վերջին իրադարձությունները մեզ բոլորիս նորից հիշեցրին մեր Կարմիր բանակի հզորության և մեր յերկրի ամբողջ պաշտպանության հետագա անշեղ ամրապնդման անհրաժեշտությունը: (Աղմկալից ու յերկարատև ծափահարություններ):

Փետրվարի սկզբին ֆինները պրակտիկ կերպով դրին Ֆինլանդիայում պատերազմը վերջացնելու հարցը: Շվեդական կառավարության միջոցով մենք իմացանք, վոր ֆինլանդական կառավարությունը կուզեր իմանալ մեր պայմանները, վորոնցով կարելի կլիներ վերջացնել պատերազմը: Նախքան այդ հարցը լուծելը, մենք դիմեցինք Ֆինլանդիայի ժողովրդական կառավարությանը, վորպեսզի իմանայինք նրա կարծիքն այդ հարցի վերաբերյալ: Ժողովրդական կառավարությունն արտահայտվեց այն բանի օգտին, վոր արյունահեղությունը դադարեցնելու և ֆինլանդական ժողովրդի դրությունը թեթևացնելու նպատակով հարկավոր էր ընդառաջ գնալ պատերազմը վերջացնելու առաջարկին: Այդ ժամանակ մենք առաջադրեցինք պայմաններ, վորոնք շուտով ընդունվեցին ֆինլանդական կառավարության կողմից: Յես պետք է ավելացնեմ, վոր ֆինների հետ

բանակցությունները, սկսվելուց մեկ շաբաթ հետո անգլիական կառավարության կողմից նույնպես ցանկություն արտահայտվեց պարզել միջնորդության հնարավորությունը՝ իբր թե Ֆինլանդիայում պատերազմը վերջացնելու նպատակով (ծիծաղ), բայց յերբ Անգլիայում մեր լիազոր-ներկայացուցիչ ընկ. Մայսկին Լոնդոնին իրազեկ դարձրեց մեր համապատասխան առաջարկների մասին, վորոնք հետագայում ամբողջությամբ ընդունվեցին Ֆինլանդիայի կողմից, ապա անգլիական կառավարությունը չուզեց օժանդակել պատերազմը վերջացնելուն և ԽՍՀՄ-ի ու Ֆինլանդիայի միջև հաշտության վերականգնելուն: Այնուամենայնիվ, համաձայնությունը ԽՍՀՄ ու Ֆինլանդիայի միջև շուտով կայացավ: Ռազմական գործողությունները դադարեցնելու և խաղաղություն հաստատելու համաձայնության արդյունքները տրված են մարտի 12-ին ստորագրված հաշտության պայմանագրի մեջ: Այդ կապակցությամբ հարց ծագեց ժողովրդական կառավարության ինքնալուծարման մասին, վորը և նրա կողմից իրականացվեց:



Դուք գիտեք հաշտության պայմանագրով սահմանված պայմանները: Այդ պայմանագրի համաձայն կատարված է Ֆինլանդիայի հարավային և մասամբ արևելյան սահմանների փոփոխում: Ամբողջ Կարելական պարանոցը՝ Վիբորգի և Վիբորգյան ծոցի հետ միասին, Լադոգայի լճի ամբողջ արևմտյան և հյուսիսային ափերը՝ Կեկսհոլմի և Սորտավալայի հետ անցան Խորհրդային Միությանը: Կանդալակշայի շրջանում, վորտեղ Ֆինլանդիայի սահմանը հատկապես մոտիկ էր Մուրմանսկի յերկաթուղուն, կատարված է սահմանի հետքաշում: Խորհրդային Միությանն անցան Սրեդնի և Ռիբաչի թերակղզիների՝ Ֆինլանդիային պատկանող վոչ մեծ մասերը — հյուսիսում, իսկ Ֆիննական ծոցում — կղզիների մի վորոշ խումբ՝ Գոգլանդ կղզու հետ միասին: Բացի դրանից, 30 տարի ժամանակով, կապալի կարգով, Խորհրդային Միությանն անցավ Խանկո թերակղզին՝ մերձակա կղզիներով, վորի համար Խորհրդային Միությունը պետք է վճարի յուրաքանչյուր տարի 8 միլիոն ֆիննական մարկ: Այդտեղ կկառուցվի մեր ռազմածովային բազան, Ֆիննական ծոցի մուտքն ագրեսիայից պաշտպանելու համար: Պայ

մանագիրը, բացի դրանից, հեշտացնում է ապրանքների տրանզիտ հնարավորությունը Շվեդիայի, Նորվեգիայի և Խորհրդային Միության համար: Դրա հետ միասին, հաշտության պայմանագիրը նախատեսում է փոխադարձաբար ձեռնպահ մնալ միմյանց վրա ամեն տեսակ հարձակումից և չմասնակցել միմյանց նկատմամբ թշնամական կոալիցիաների:

Անգլո-Ֆրանսիական մամուլում փորձեր էյին արվում խորհրդային-ֆինլանդական պայմանագիրը և, մասնավորապես, Կարելական պարանոցը Խորհրդային Միությանն անցնելը պատկերել վորպես Ֆինլանդիայի անկախության «վոչնչացում»: Այդ, իհարկե, վայրենություն է և դատարկ վայրահաչություն: Ֆինլանդիան այժմ էլ ներկայացնում է մի տերիտորիա, վորը համարյա չորս անգամ ավելի մեծ է քան Հունգարիան, ութ անգամ ավելի մեծ է քան Շվեյցարիան: Յեթե վոչ վոք չի տարակուսում, վոր Հունգարիան ու Շվեյցարիան անկախ պետություններ են, ինչպես կարելի յե տարակուսել, վոր Ֆինլանդիան անկախ և սուվերեն չէ:

Նույն այդ անգլո-Ֆրանսիական մամուլում գրում էյին, թե Խորհրդային Միու-



թյունն իբր ուզում է Ֆինլանդիան դարձնել սոսկ միայն Բալթիական պետություն: Հասկանալի յե, վոր դա նույնպես հիմարություն է: Բավական է մատնանշել, վոր ԽՍՀՄ-ը պատերազմի ժամանակ գրավելով Սառուցյալ ովկիանոսին մերձակա՝ Պետսամոյի շրջանը, այն կամավոր կերպով նորից վերադարձրեց Ֆինլանդիային, քանի վոր անհրաժեշտ դտավ Ֆինլանդիային տրամադրել չսառչող ովկիանոսային նավահանգիստ: Սրանից հետևում է, վոր մենք Ֆինլանդիան համարում ենք վոչ միայն բալթիական, այլև Հյուսիսային յերկիր:

Ճշմարտությունն անգլո-Ֆրանսիական թերթերի հերյուրանքները չեն, թերթեր, վորոնք հմտություն են ձեռք բերել հակախորհրդային պրոպագանդայի ամեն տեսակ կեղծագրերի սարքման մեջ: Ճշմարտությունն այլ բան է, այսինքն այն, վոր Խորհրդային Միությունը, վորը ջախջախեց ֆիննական բանակը և լիակատար հնարավորություն ուներ գրավելու ամբողջ Ֆինլանդիան, չդիմեց այդ քայլին և չպահանջեց վորևէ կոնտրիբուցիա ի հատուցումն իր պատերազմական ծախսերի, ինչպես վոր կաներ ամեն մի այլ տերություն, այլ իր

ցանկությունները սահմանափակեց մինիմումով, մեծահոգություն ցուցաբերելով Ֆինլանդիայի վերաբերմամբ:

Ո՞րն է հաշտության պայմանագրի հիմնական իմաստը: Այն, որ պայմանագիրն ինչպես հարկն է ապահովում է Լենինգրադի, ինչպես նաև Մուրմանսկի ու Մուրմանյան երկաթուղու անվտանգությունը: Այս անգամ մենք չէինք կարող սահմանափակվել միայն այն ցանկություններով, որոնք մեր կողմից առաջադրվեցին անցյալ տարվա աշնանը և որոնց ընդունումը Ֆինլանդիայի կողմից, կնշանակեր խուսափել պատերազմից: Այն բանից հետո, երբ ոչ մեր հանցանքով թափվեց մեր մարտիկների արյունը և մենք համոզվեցինք թե որքա՛ն հեռու է գնացել Ֆինլանդական կառավարության քաղաքականության թշնամությունը Խորհրդային Միության վերաբերմամբ, մենք պետք է Լենինգրադի անվտանգության հարցը դնեինք ավելի հուսալի հիմքի վրա և, բացի դրանից, պետք է դնեինք Մուրմանյան երկաթուղու ու Մուրմանսկի անվտանգության հարցը, Մուրմանսկի, որը մեր միակ չսառչող օվկիանոսային նավահանգիստն է արևմուտքում և այդ պատճառով բացառիկ



մեծ նշանակություն ունի մեր արտաքին առևտրի ու առհասարակ այլ երկրների հետ Խորհրդային Միության կապի համար: Ոչ մի այլ նպատակ, բացի Լենինգրադի, Մուրմանսկի և Մուրմանյան երկաթուղու անվտանգությունն ապահովելուց, մենք չէինք դնում հաշտության պայմանագրի մեջ: Բայց դրա փոխարեն այդ խնդիրը մենք անհրաժեշտ էինք համարում լուծել հուսալիորեն, հաստատուն կերպով: Հաշտության պայմանագիրը ելնում է Ֆինլանդիայի պետական անկախության սկզբունքի ճանաչումից, նրա արտաքին ու ներքին քաղաքականության ինքնուրույնության ճանաչումից և, դրա հետ միասին, Լենինգրադի ու Խորհրդային Միության հյուսիս-արևմտյան սահմանների անվտանգությունն ապահովելու անհրաժեշտությունից:

Այսպիսով, մեր առաջադրած նպատակը ձեռք է բերվել, և մենք կարող ենք լիակատար գոհունակություն արտահայտել Ֆինլանդիայի հետ կնքված պայմանագրի առթիվ: (Ծափահարություններ):

Այսուհետև քաղաքական ու տնտեսական հարաբերությունները Ֆինլանդիայի հետ լիովին վերականգնվում են: Կառավարու-

թյունը համոզմունք է հայտնում, վոր Խոր
հրդային Միության ու Ֆինլանդիայի մի-
ջև կզարգանան բարի-դրացիական նորմալ
հարաբերությունները:

Սակայն, պետք է նախազգուշացնել հենց
նոր կնքված հաշտության պայմանագրի
խախտման փորձերից, վոր արդեն արվում
են Ֆինլանդիայի, ինչպես նաև Շվեդիայի
ու Նորվեգիայի վորոշ շրջանների կողմից,
նրանց միջև ռազմա-պաշտպանողական դա-
շինք ստեղծելու պատրվակով: Նորվեգա-
կան ստորտինգի նախագահ պ. Համբրոյի
վերջերս արտասանած ճառի լույսով, վորը
պատմական օրինակների վրա հենվելով
Ֆինլանդիային կոչ էր անում «հետ նվա-
ճել յերկրի սահմանները» և հայտարարում
էր, թե այնպիսի հաշտությունը, ինչպիսին
կնքել է Ֆինլանդիան ԽՍՀՄ-ի հետ, «չի
կարող յերկար գոյություն ունենալ»,—այդ
և նման յելույթների լույսի տակ դժվար չէ
հասկանալ, վոր Ֆինլանդիայի, Շվեդիայի
ու Նորվեգիայի այսպես կոչված՝ «պաշտ-
պանողական դաշինքի» ստեղծման փորձերն
ուղղված են ԽՍՀՄ-ի դեմ և անխոհեմ կեր-
պով հրահրվում են ռազմական ռեվանշի
իդեոլոգիայով: Այդպիսի ռազմական դա-
շինքի ստեղծումը՝ Ֆինլանդիայի մասնակ-



ցությամբ, վոչ միայն կհակասեր հաշտու-
թյան պայմանագրի 3-րդ հոդվածին, վորը
բացառում է պայմանավորվող կողմերի
մասնակցությունը միմյանց նկատմամբ
թշնամական կոալիցիաների (դաշինքների),
այլև կհակասեր ամբողջ հաշտության պայ-
մանագրին, վորն ամուր կերպով վորոշել է
խորհրդային-ֆինլանդական սահմանը: Այդ
պայմանագրին հակառակ մնալը անհա-
մատեղելի յե Ֆինլանդիայի մասնակցու-
թյան հետ ԽՍՀՄ-ի դեմ ուղղված վորևէ
ռազմա-ռեվանշիստական դաշինքի: Իսկ
Շվեդիայի ու Նորվեգիայի մասնակցու-
թյունը նման դաշինքին, կնշանակեր այդ
յերկրների հրաժարվելը նրանց կողմից կի-
րառվող չեզոքության քաղաքականությու-
նից և նրանց անցնելը արտաքին նոր քաղա-
քականության, վորից Խորհրդային Միու-
թյունը չի կարողանա չանել իր համապա-
տասխան հետևությունները:

Իր հերթին, կառավարությունը գտնում
է, վոր Խորհրդային Միությունը չունի վի-
ճելի հարցեր Շվեդիայի ու Նորվեգիայի
հետ, և վոր խորհրդային-շվեդական ու
խորհրդային-նորվեգիական հարաբերու-
թյունները պետք է զարգանան բարեկամու-
թյան հիման վրա: Իսկ հակախորհրդային

նպատակներով տարածվող այն լուրերը, թե Խորհրդային Միությունն իբր նավահանգիստներ է պահանջում Սկանդինավիայի արևմտյան ափերին, թե նա պահանջում է Նարվիկը և այլն, այնպիսի վայրենություն են, որ դրանք հարկ չկա նույնիսկ հերքելու: Իսկ պարոնայք «սոցիալիստների» ջանքերը, նման Խեգլունդին՝ Շվեդիայում և Տրանմելին՝ Նորվեգիայում, փչացնելու այդ յերկրների հարաբերությունները Խորհրդային Միության հետ, պետք է անարգանքի սյունին գամել որպես բանվոր դասակարգի ամենավոխերիմ թշնամիների գործ, որոնք վաճառվել են օտարերկրյա կապիտալիստներին և դավաճանում են իրենց ժողովրդի շահերը:

Հաշտության պայմանագրի կնքումը Ֆինլանդիայի հետ, ավարտում է Բալթիկ ծովի կողմից Խորհրդային Միության անվտանգությունն ապահովելու ապարիկում անցյալ տարի դրված խնդրի կատարումը: Այդ պայմանագիրն անհրաժեշտ մի լրացում է հանդիսանում Էստոնիայի, Լատվիայի և Լիտվայի հետ կնքված փոխադարձ օգնության յերեք պայմանագրերին: Փոխադարձ օգնության այդ պայմանագրերի կնքման ժամանակից անցած կես տարվա փորձի



հիման վրա կարելի յե միանգամայն որոշակի դրական հետևություններ անել մերձբալթյան յերկրների հետ կնքված պայմանագրերի մասին: Պետք է ընդունել, որ Խորհրդային Միության պայմանագրերը Էստոնիայի, Լատվիայի և Լիտվայի հետ, նպաստեցին ինչպես Խորհրդային Միության, այնպես և Էստոնիայի, Լատվիայի ու Լիտվայի միջազգային դիրքերի ամրացմանը: Հակառակ այն ահաբեկումներին, որոնցով զբաղվում էյին Խորհրդային Միությանը թշնամի իմպերիալիստական շրջանները, Էստոնիայի, Լատվիայի ու Լիտվայի պետական անկախությունն ու քաղաքականության ինքնուրույնությունը ոչ մի բանով չտուժեցին, իսկ այդ յերկրների տնտեսական հարաբերությունները Խորհրդային Միության հետ սկսել են նկատելիորեն ընդարձակվել: Էստոնիայի, Լատվիայի ու Լիտվայի հետ կնքված պայմանագրերի կատարումն ընթանում է բավարար և նախադըրյալներ են ստեղծում Խորհրդային Միության ու այդ պետությունների միջև հարաբերությունների հետագա բարելավման համար:

Վերջին ժամանակներս տարերկրյա մամուլում բավական մեծ տեղ է հատկացվում

Խորհրդային Միության փոխհարաբերու-
թյունների հարցին հարավային սահմա-
նում, մասնավորապես Անդրկովկասում
նրա հարեվանների, ինչպես նաև Ռումի-
նիայի հետ։ Հարկավո՞ր է արդյոք ապա-
ցուցել, որ կառավարությունը ոչ մի
հիմք չի տեսնում մեր հարեվանների հետ
հարաբերությունների վատացման համար
նաև հարավում։ Ճիշտ է, այժմ Սիրիայում
և առհասարակ Մերձավոր արևելքում կա-
կածելի մեծ աշխատանք է կատարվում
անգլո-ֆրանսիական, գերազանցապես գա-
ղութային բանակների ստեղծման ասպարի-
զում՝ գեներալ Վեյգանի ղեկավարությամբ։
Մենք պետք է զգաստ լինենք այդ գաղու-
թային և ոչ-գաղութային զորքերը Խոր-
հրդային Միության նկատմամբ թշնամա-
կան նպատակներով օգտագործելու փորձե-
րի հանդեպ։ Այդ կարգի ամեն տեսակ
փորձերը, մեր կողմից կառաջացնեն պա-
տասխան միջոցառումներ ընդդեմ ագրեսո-
րների, ընդ որում կրակի հետ այդ-
պիսի խաղի վտանգավորությունը պետք է
միանգամայն ակնհայտ լինի ԽՍՀՄ-ի
նկատմամբ թշնամական տերությունների
համար և մեր հարեվաններից նրանց հա-
մար, ովքեր կդառնան ԽՍՀՄ-ի դեմ ուղղ-



ված այդ ագրեսիվ քաղաքականության
դեմը։ (Ծափահարություններ)։
Իսկ ինչ վերաբերում է մեր հարաբերու-
թյուններին Թյուրքիայի և Իրանի հետ,
ապա դրանք բնորոշվում են մեր միջև գո-
յություն ունեցող՝ միմյանց վրա չհարձակ-
վելու պայմանագրերով և Խորհրդային
Միության անշեղ ձգտմամբ՝ կատարելու
դրանից բղխող փոխադարձ պարտավորու-
թյունները։ Մեր հարաբերություններն Ի-
րանի հետ տնտեսական բնագավառում կար-
գավորվեցին հենց նոր կնքված խորհրդա-
յին-իրանական առևտրական պայմանագրով։
Իմ հիշատակած հարավային հարեվան
պետություններից մենք միմյանց վրա չը
հարձակվելու պակտ չունենք Ռումինիայի
հետ։ Այդ բացատրվում է չլուծված վի-
ճելի հարցի, Բեսարաբիայի հարցի առ-
կայությամբ, Բեսարաբիայի, որի զավ-
թումը Ռումինիայի կողմից Խորհրդային
Միությունը երբեք չի ճանաչել, թեկուզ և
երբեք հարց չի դրել Բեսարաբիան պա-
տերազմական ճանապարհով վերադարձնե-
լու մասին։ Ուստի, չկա որևէ հիմք նաև
խորհրդային-ռումինական հարաբերություն-
ների որևէ վատացման համար։ Ճիշտ է,
մենք երկար ժամանակ Ռումինիայում չու-

նենք լիազոր-ներկայացուցիչ և նրա պարտականությունները կատարում է գործերի հավատարմատարը: Բայց այդ առաջ է յեկել վոչ հեռու անցյալի սպեցիֆիկ առանձնահատկությունների հետևանքով: Յեթե անդրադառնանք այդ հարցին, ապա պետք է հիշեցնել ռումինական իշխանությունների անբարյացակամ դերը 1938 թվին, այն ժամանակ Ռումինիայում խորհրդային լիազոր-ներկայացուցչի պարտականությունները կատարող Բուտենկոյի վերաբերմամբ: Ինչպես հայտնի յե, այդ վերջինս ինչ վոր յեղանակով այն ժամանակ խորհրդավոր կերպով անհայտացավ վոչ միայն լիազոր-ներկայացուցչությունից, այլև Ռումինիայից, և խորհրդային կառավարությանն այնպես էլ չհաջողվեց հավաստի վորևե բան պարզել այդ անհայտացման մասին, ըստ վորում մենք, իբր թե, պետք է հավատայինք, վոր ռումինական վոչ մի տեսակի իշխանություններ առնչություն չեն ունեցել այդ խայտառակ-հանցավոր գործի հետ: Ավելորդ է ասել, վոր քաղաքակիրթ պետության մեջ և առհասարակ քիչ թե շատ բարեկարգ յերկրում այդպիսի բաներ չպետք է տեղի ունենան: Դրանից հետո հասկանալի յե Ռումինիա-



յում խորհրդային լիազոր-ներկայացուցիչ նշանակելու հարցում տեղի ունեցած ձըգձըգումը: Պետք է, սակայն, կարծել, վոր Ռումինիան կհասկանա, վոր նման բաներն անհանդուրժելի յեն:

Ճապոնիայի հետ մեր հարաբերությունների մեջ մենք վո՛չ առանց վորոշ դժվարությունների, բայց այնուամենայնիվ լուծեցինք մի քանի հարցեր: Այդ է վկայում անցյալ տարվա դեկտեմբերի 31-ին կնքված խորհրդային-ճապոնական համաձայնությունն ընթացիկ տարում ձկնորսական հարցի վերաբերյալ, ինչպես նաև Ճապոնիայի համաձայնությունը՝ վճարելու Չինարևելյան յերկաթուղու դիմաց հասանելիք վերջին, նրա կողմից յերկար ժամանակ ուշացած դրամական մուծումը: Այնուամենայնիվ չի կարելի մեծ գոհունակություն արտահայտել Ճապոնիայի հետ մեր հարաբերությունների վերաբերմամբ: Այսպես օրինակ, մինչև այժմ, չնայած խորհրդային-մոնղոլական և ճապոնա-մանջուրական պատգամավորների միջև տեղի ունեցած յերկարատև բանակցություններին, անլուծելի յե մնացել անցյալ տարվա տեղի ունեցած ռազմական կոնֆլիկտի շրջանում գտնվող տերիտորիայի վրա սահմանը վորոշելու կարևոր

հարցը: Ճապոնական իշխանությունները շարունակում են խոչընդոտներ ստեղծել Չին-արևելյան յերկաթուղու համար Ճապոնիայի կատարած վերջին դրամական մուծումը նորմալ կերպով ստացորդելու հարցում: Շատ դեպքերում միանգամայն աննորմալ է ճապոնական իշխանությունների վերաբերմունքը խորհրդային որգանների աշխատակիցների նկատմամբ՝ Ճապոնիայում և Մանջուրիայում: Ճապոնիայում պետք է վերջապես հասկանան, վոր Խորհրդային Միությունը վոչ մի դեպքում թույլ չի տա վոր խախտվեն իր շահերը: (Յերկարատեվ ծափահարություններ): Խորհրդային-ճապոնական հարաբերությունների այսպիսի ըմբռնման դեպքում միայն նրանք կարող են զարգանալ բավարար կերպով:

Ճապոնիայի կապակցությամբ, յերկու խոսք կասեմ մի այսպես ասած՝ վոչ-գործարար հարցի մասին: (Դահլիճում ուրախ աշխուժություն): Որերս ճապոնական պառլամենտի մի դեպուտատ իր կառավարությանն առաջադրել եր այսպիսի հարց. «Չպե՞տք է արդյոք մտածել, թե ինչ կերպ արմատապես վերջ դնել ԽՍՀՄ-ի ու Ճապոնիայի միջև տեղի ունեցող կոնֆլիկտներին,



օրինակ, Պրիմորյեն և այլ տերիտորիաներ գնելու միջոցով»: (Ծիծաղի պոռթկում): Այդ հարցը տվող ճապոնական դեպուտատը, վորը հետաքրքրվում է խորհրդային տերիտորիաների գնմամբ, վորոնք չեն վաճառվում (ծիծաղ), առնվազն ուրախ մարդ է: (Ծիծաղ, ծափահարություններ): Բայց իր տխմար հարցերով, նա, իմ կարծիքով չի բարձրացնում իր պառլամենտի հեղինակությունը: (Ծիծաղ): Սակայն, յեթե ճապոնական պառլամենտում այդպես ուժեղ տարվում են առևտրով, լավ չե՞ր լինի արդյոք, այդ պառլամենտի դեպուտատներն զբաղվեյին հարավային Սախալինի վաճառքով: (Ծիծաղ, յերկարատեվ ծափահարություններ): Յես չեմ տարակուսում, վոր ԽՍՀՄ-ում գնորդներ կգտնվեյին: (Ծիծաղ, ծափահարություններ):

Ինչ վերաբերում է մեր հարաբերություններին Ամերիկայի Միացյալ Նահանգների հետ, ապա դրանք վերջին ժամանակներս չեն բարելավվել ու, թերևս, չեն ել վատացել, յեթե չհաշվենք այսպես կոչված «բարոյական եմբարգոն» ԽՍՀՄ-ի դեմ, մի բան, վորը զուրկ է վորևէ իմաստից, մանավանդ այժմ, ԽՍՀՄ-ի ու Ֆինլանդիայի միջև հաշտություն կնքվելուց հետո: Մեր

իմպորտն ԱՄՆ-ից, անցյալ տարվա համեմատությամբ աճել է: Բայց այն կարող էր է՛լ ավելի աճել, յեթե ամերիկյան իշխանությունները խոչընդոտներ չհանդիսանային: Այս է, ամբողջությամբ վերցրած, միջազգային իրադրությունը վերջին հինգ ամիսների ժամանակաշրջանում տեղի ունեցած իրադարձությունների կապակցությամբ:

Վերևում ամբողջ ասվածից յերևում է, թե մենք ինչումն ենք տեսնում մեր արտաքին քաղաքականության գլխավոր խնդիրները տվյալ միջազգային իրադրության մեջ:

Կարճ ասած, մեր արտաքին քաղաքականության խնդիրներն այն են, վոր ապահովենք խաղաղությունը ժողովուրդների միջև և մեր յերկրի անվտանգությունը: Դրանից արվող հետևությունն է — չեզոքության դերը և Յեվրոպայի խոշորագույն տերությունների միջև ծագած պատերազմին չմասնակցելը: Այդ դերը հիմնված է մեր կնքած պայմանագրերի վրա և այն լրիվին համապատասխանում է Խորհրդային Միության շահերին: Այդ դերը միևնույն ժամանակ դրական ազդեցություն է գործում Յեվրոպայում պատերազմի ծա-



վալման ու բորբոքման նկատմամբ, ուստի և այն օգուտ է բոլոր ժողովուրդների շահերին, վորոնք ձգտում են խաղաղության և վորոնք արդեն տնքում են պատերազմի հետևանքով առաջացած նոր հսկայական զրկանքներից:

Ամփոփելով վերջին ժամանակաշրջանի հանրագումարները, մենք տեսնում ենք, վոր մեր յերկրի անվտանգությունն ապահովելու գործում մենք այս ժամանակվա ընթացքում ձեռք ենք բերել վոչ-փոքր հաջողություններ: Դա՛ էլ հենց կատաղեցնում է մեր թշնամիներին: Իսկ մենք հավատալով մեր գործին և մեր ուժերին, մեր արտաքին քաղաքականությունն ամենայն հետևողականությամբ անշեղորեն կշարունակենք նաև հետագայում:

(Ամբողջ դահլիճում բուռն, յերկարատև ծափահարություններ: Դեպուտատները վոտքի յեն կանգնում):

---

Պատ. խմբագիր՝ Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Պատ. քարտուղար՝ Հ. ՍԱՐԳՍՅԱՆ

Սրբագրիչ՝ ՀԱՐ. ՓԱՐԻԿՅԱՆ

Գլավլիտի լիազոր Ջ— 1092

Պատվեր՝ 253 տիրաժ 7970

Հանձնված է արտադրության 1/IV 1940 թ.

Ստորագրված է տպագրության 4/IV 1940 թ.

---

Հայկական ԽՍՀ Ժողկոմխորհին կից «Խ. Հ.»
Հրատարակչության տպարան, Երևան